Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 14 ՀՈՒԼԻՍ 1952

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՄԵԹՈԴ Է

Կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում աճում է սովետական մարդկանց աշխատանքային ակտիվությունը և ստեղծագործական նախաձեռնությունը, որն իր վառ արտահայտությունն է գտնում համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ։ Սովետական պետության հիմնադիրներ Լենինը և Ստալինը սովետական իշխանության առաջին իսկ օրվանից նշել են սոցիալիստական մրցության մեծագույն դերը մասսաների ստեղծագործական նախաձեռնության դրսևորման և նրանց նոր կյանքի կառուցման մեջ ներգրավելու գործում։

Ընկեր Ստալինը սոցիալիստական մրցությունը բնորոշել է որպես սոցիալիզմի կառուցման կոմունիստական մեթոդ, աշխատավորների միլիոնավոր մասսաների առավելագույն ակտիվության հիման վրա, որպես

սովետական հասարակության անտեսական զարգացման հզոր շարժիչ ուժ։

Սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ մրցությունը մեր երկրում դարձել է իսկական մասսայական շարժում, աշխատանքի և արտադրության բարձր ձևերի, հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման և մեր Հայրենիքի անտեսական հզորությունն ամրապնդելու համաժողովրդական շարժում։

Սոցիալիստական մրցությունը հանդիսանում է աշխատանքի սոցիալիստական կազմակերպման օրենքը, որն իր արտահայտությունն է գտել սոցիալիզմի հետևյալ ղեկավար սկզբունքի մեջ՝ «յուրաքանչյուրից ըստ նրա ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ նրա կատարած աշխատանքի»։ Այդ սկզբունքի ուժը հետևողականորեն և լիակատար կերպով բացահայտվում է սոցիալիստական մրցության մեջ։

Կապիտալիստական երկրներում, որտեղ աշխատավորը դաժան շահագործման է ենթարկվում, չի կարող հանդես բերել նախաձեռնություն և ստեղծագործական աշխատանք։

Սոցիալիզմը ազատագրելով բանվորներին



և գյուղացիներին շահագործումից, արմատապես փոխեց նաև աշխատանքի բնույթը մեր երկրում։ Սոցիալիզմը աշխատանքը դարձրից մարդկանց ազատագրման, նրանց ընդունակությունները ու տաղանդները դրսևորելու միջոց։

Սոցիալիստական մրցությունը, որպես սովետական կարգի զարգացման օրինաչափություն, արմատապես տարբերվում է կոնկուրենցիայից։ Ընկեր Ստալինը գրել է. «Կոնկուրենցիան ասում է՝ ջախջախի՛ր ետ մնացողներին, որպեսզի հաստատես քո տիրապետությունը։ Սոցիալիստական մրցությունն ասում է՝ ոմանք վատ են աշխատում, մյուսները լավ, երրորդներն ավելի լավ,— հասի՛ր լավագույններին և ձեռք բեր ընդհանուր վերելք։ Հենց դրանով է բացատրվում այն չտեսնված արտադրական խանդավառությունը, որը սոցիալիստական մրցության հետևանքով ընդգրկել է աշխատավորների միլիոնավոր մասսաներին» (Ի. Ստալին, Երկեր, հատ. 12, էջ 125)։

Սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում անսահման հնարավորություններ ստեղծեց սոցիալիստական մրցության զարգացման և հետագա ծավալման համար։ Սոցիալիստա-

կան մրցության նոր բարձրագույն էտապը հանդիսացավ ստախանովյան շարժումը, որն ընկեր Ստալինը անվանել է մեր ժամանակի ամենակենսունակ և անհաղթահարելի շարժումը։

Հետպատերազմյան ստալինյան առաջին հնգամյակի տարիներին սոցիալիստական մրցությունը հարստացավ կոմունիստական շինարարության բազմաթիվ նոր ձևերով։ Հետպատերազմյան ժամանակաշրջանում սոցիալիստական մրցության կարևոր առանձնահատկությունը նրա մասսայականությունն է, համաժողովրդական բնույթը, միլիոններ ընդգրկող նրա ծավալը։ Մեր օրերում ստախանովյան շարժման բարձրագույն ձևը կոլեկտիվ ստախանովյան աշխատանքն է։ Ստախանովյան շարժման ներկա էտապի բնորոշ առանձնահատկությունն է արտադրական տեղամասերի, ցեխերի և ամբողջ ձեռնարկությունների աշխատանքի կոլեկտիվ ստախանովյան մեթոդներին անցնելը, առաջավորների փորձի մասսայաբար տարածումը, մասսաների ստեղծագործական նախաձեռնության հետևողական և պլանաչափ կազմակերպումը, արտադրության տեխնիկական, տնտեսական ու կազմակերպական հարցերի կոմպլեքսային լուծումը։



Արտադրական պլանների կատարման համար համաժողովրդական սոցիալիստական մրցության ընթացքում լայն շարժում ծավալվեց բարձրորակ արտադրանքի թողարկման համար, ինքնարժեքի իջեցման, հումքի, նյութերի, էլեկտրաէներգիայի խնայողության համար։ Այժմ ստախանովաբար են աշխատում ոչ թե առանձին բանվորներ, այլ ամբողջ կոլեկտիվներ՝ բրիգադաներ, տեղամասեր, ցեխեր և ձեռնարկություններ։

Սոցիալիստական մրցության ու նորարարների առաջավոր մեթոդների արմատավորման գործում կարևոր դեր է խաղում գիտության գործիչների և արտադրության աշխատողների ստեղծագործական համագործակցությունը։ Սոցիալիստական մրցությունը ծնում է մասսայական գյուտարարություն։ Այժմ մեր երկրում յուրաքանչյուր երրորդ բանվորը գյուտարար է ու ռացիոնալիզատոր և ակտիվ կերպով պայքարում է իր հարազատ պետության տեխնիկական պրոգրեսի համար։ Սոցիալիզմի երկրի նորարարների ամեն մի նախաձեռնություն համաժողովրդական ուշադրության է արժանանում։ Միանգամայն հակառակ պատկեր գոյություն ունի կապիտալիստական երկրներում։ Շահագործման և

վարձու ստրկության վրա հիմնված կապիտալիզմը բանվորներին դատապարտում է դաժան շահագործման, քաղցի և աղքատության, աշխատանքը դարձնում ծանր բեռ։

Մեզ մոտ աշխատավոր մարդը մեծ պատիվ ունի և եթե նա լավ է աշխատում ու հասարակությանը տալիս է այն, ինչ կարող է տալ,— ասում է ընկեր Ստալինը,— նա աշխատանքի հերոս է, նա փառքի է արժանանում։ Աչքի ընկնող գյուտերի և արտադրական աշխատանքի մեթոդների արմատական կատարելագործման համար ամեն տարի Ստալինյան մրցանակների շնորհումը ցույց է տալիս, թե ինչպես բոլշևիկների պարտիան, Սովետական կառավարությունը և անձամբ ընկեր Ստալինը բարձր են գնահատում նորարարական ամեն մի նախաձեռնություն։

Պատերազմի ավարտումից հետո, մինչև 1949 թվականը սոցիալիստական տնտեսության բոլոր բնագավառներում ձեռք բերած հաջողությունների համար 510 հազար մարդ պարգևատրվել են Սովետական Միության շքանշաններով և մեդալներով։ Աչքի ընկնող գյուտերի և արտադրական աշխատանքի մեթոդների արմատական կատարելագործման



համար 1947—1949 թվականների ընթացքում Ստալինյան մրցանակի լաուրեատի կոչման են արժանացել 4.711 մարդ։

ՍՍՌՄ-ում սոցիալիստական մրցության հարուստ փորձը միջազգային հսկայական նշանակություն ունի։ Այդ փորձը խորապես ուսումնասիրում են, դրանով զինվում են ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները, որոնք սոցիալիզմ են կառուցում։ Հաջող կերպով իրականացնելով ժողովրդական տնտեսության սոցիալիստական վերակառուցման և հետպատերազմյան վերականգնման ու զարգացման պլանները ժողովրդական դեմոկրատիայի երկրները ավելի ու ավելի լայնորեն են ծավալում աշխատանքային մրցությունը՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրության ռացիոնալիզացիայի և խնայողության համար։

Մեր երկիրն իրականացնում է շինարարական լայն ծրագիր։ Սովետական մարդիկ հսկայական ոգևորությամբ Վոլգայի և Դնեպրի, Դոնի և Ամու-Դարիայի վրա կառուցում են աշխարհում իրենց հավասարը չունեցող վիթխարի հիդրոէլեկտրակայաններ և խոշոր

ջրանցքներ, կենսագործում են բնության վերափոխման ստալինյան մեծ պլանը։ 1952 թվականի մայիսի 31-ին պատմական նշանակություն ունեցող իրադարձություն տեղի ունեցավ մեր երկրում։ Սովետական ժողովրդի հերոսական ջանքերով այդ օրը ավարտվեց կոմունիզմի մեծ կառուցումների առաջնեկը՝ Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքը։ Իրականացան մեր ժողովրդի դարավոր իղձերը— միացան ռուսական մեծ գետերի՝ Վոլգայի և Դոնի ջրերը։ Ստալինյան դարաշրջանի մեծ կառուցումները իսկական համաժողովրդական կառուցումներ են, որոնց մասնակցում է ամբողջ սովետական ժողովուրդը։ Կառուցվող հիդրոէլեկտրակայանների և ջրանցքների պատվերները կատարող արտադրական ձեռնարկություններում լայն ծավալ է ստացել սոցիալիստական մրցությունը։ Ցեխերը, բրիգադաները, առաջավոր բանվորները՝ ստախանովականները լրացուցիչ պարտավորություններ են վերցնում կոմունիզմի մեծ կառուցումների պատվերները ժամկետից շուտ և բարձր որակով կատարելու համար։ Նոր կառուցվող հիդրոկայանների էլեկտրաէներգիայի օգտագործումը վճռական քայլ կհանդիսանա աշխատանքի արտադրողականության բարձրացման և սպառման առար-



կաների առատություն ստեղծելու համար, որը կարևոր պայման է հանդիսանում սոցիալիզմից կոմունիզմին անցնելու գործում։

Այժմ սոցիալիստական մրցության գլխավոր խնդիրն է՝ պետական պլանները ժամկետից շուտ և սահմանված ասորտիմենտով կատարելու հետ միասին յուրաքանչյուր ցեխ և ձեռնարկություն պետք է պայքարի արտադրանքի որակի բարձրացման և ինքնարժեքի իջեցման, հումքի և նյութերի խնայողության համար, արդյունաբերության և գյուղատնտեսության ներքին ռեզերվները ճիշտ օգտագործելու համար, նոր տեխնիկայի ու առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, աշխատանքի արտադրողականության և արտադրության կուլտուրայի բարձրացման համար։ Պետք է կազմակերպել աշխատանքի առաջավոր մեթոդների, փորձի լայն փոխանակում, ամենուրեք ապահովել մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարումը։

Ընկեր Ստալինը սոցիալիստական մրցությունը անվանել է մասսաների գործարար ռևոլյուցիոն ինքնաքննադատության արտա-

հայտություն։ Սոցիալիստական մրցության մասնակիցները ժողովներում, արտադրական խորհրդակցություններում հանդես գալով գործարար քննադատությամբ՝ բացահայտում են արտադրության և աշխատանքի կազմակերպման թերությունները, ետ մնալու պատճառները և կոնկրետ միջոցներ են նշում դրանք վերացնելու համար։ Մասսաների գործարար ռևոլուցիոն ինքնաքննադատությունը մրցողների անդուլ պայքարն է հնի, իր դարն ապրածի դեմ, հանուն նորի, առաջավորի հաղթանակի։ Սոցիալիստական մրցությունը կարևորագույն դեր է խաղում մասսաների մեջ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք դաստիարակելու և մարդկանց գիտակցության միջից կապիտալիզմի մնացուկները վերացնելու գործում։

Ոգեշնչված կենարար սովետական հայրենասիրությամբ, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը՝ սովետական ժողովուրդը Լենինի—Ստալինի պարտիայի ղեկավարությամբ 1952 թվականի ժողովրդա-տնտեսական պլանը ժամկետից շուտ կատարելով նոր հաջողություններ ձեռք կբերի կոմունիզմի կառուցման գործում։

ՀՈՎՀ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՋՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ՄԵԾ ԿԱՌՈՒՑՈՒՄՆԵՐԻ ԱՌԱՋՆԵԿԸ

Սովետական բազմամիլիոն ու բազմազգ ժողովուրդը սրտի անհուն բերկրանքով դիմավորեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը՝ ստալինյան դարաշրջանի մեծագույն կառուցումներից մեկը՝ Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքը այս տարվա հուլիսի 27-ից գործարկելու մասին։

Այդ բերկրալի լուրը մեր բոլշևիկյան մամուլը, ռադիոն, մեր ագիտատորների բազմահազար բանակը հասցրին գործարանների ու ֆաբրիկաների, հանքերի ու կառուցումների, կոլտնտեսությունների ու սովխոզների, մեքենա-տրակտորային կայանների ու մյուս բոլոր հիմնարկ-ձեռնարկությունների աշխատավորներին, ամենուրեք նոր լիցք, նոր թափ հաղորդելով այն մեծ պայքարին, որ մղում է սովետական ստեղծագործ ժողովուրդը կոմունիզմի լիակատար հաղթանակի համար։

Ռուսական երկու մեծ գետերի՝ Վոլգայի և Դոնի ջրերի միացումը եղել է ռուս մեծ

ժողովրդի դարավոր բաղձանքը։ Դեռ անցյալում, Հոկտեմբերյան ռևոլյուցիայից էլ շատ առաջ եղել են այդ երկու գետերի միացման մի շարք նախագծեր, սակայն կալվածատիրական-կապիտալիստական ռեակցիոն կարգերի պայմաններում այդ նախագծերը մնացել են թղթի վրա։ Միայն սովետական կարգերում, Լենինի—Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, հաղթանակած սոցիալիզմի պայմաններում, շահագործումից իսպառ ազատագրված ժողովրդի ստեղծագործ ուժերի ծավալման հիման վրա հնարավոր եղավ Վոլգա-Դոն ջրանցքի և նրա նման ու նրանից էլ մեծ կառուցումների իրագործումը։

Դեռևս 1918 թվականին, սովետական կարգերի ստեղծման առաջին իսկ տարում, ժողովուրդների մեծ առաջնորդներ և ուսուցիչներ Վլադիմիր Իլյիչ Լենինը և Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինը խոշոր նշանակություն էին տալիս Վոլգա-Դոն ջրանցքի կառուցման խնդրին։ Լենինը Ժողովրդական Կոմիսարների Սովետի նիստերից մեկում, խոսելով Վոլգա-Դոն ջրանցքի մասին, ասել է, որ այն խոշոր նշանակություն կունենա Ռուսաստանի հարավ-արևելյան հետամնաց մարզերի տնտեսական զարգացման գործում։



1918 թվականի սեպտեմբերին, Ցարիցինի հերոսական պաշտպանության օրերին ընկեր Ստալինը Կ. Ե. Վորոշիլովի հետ միասին Վոլգա-Դոն ջրանցքի կառուցման մասին գրել է հետևյալ ջերմ խոսքերը. «Ջրանցքը կփորենք կազակներին Վոլգայում և Դոնում խեղդելուց հետո»։

Եվ իրոք, անգլո-ֆրանսիական ու ամերիկա-ճապոնական ինտերվենտների ու նրանց սպիտակգվարդիական կամակատարների ոհմակների ջախջախումից հետո, հատկապես ստալինյան երրորդ հնգամյակում, մեր երկիրը ձեռնամուխ եղավ Վոլգա-Դոն ջրանցքի նախագծումներին։ Նույնիսկ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին, ընկեր Ստալինի ցուցումներով, կանգ չէին առել ջրանցքի նախագծային աշխատանքները։

Հայրենական Մեծ պատերազմի հաղթական ավարտումից հետո, 1948 թվականին, երկիրը հնարավորություն ստացավ ձեռնամուխ լինելու ջրանցքի շինարարությանը։ Բուռն թափով սկսվեցին շինարարության բազայի ստեղծման աշխատանքները, այն է՝ էլեկտրագծերի, ճանապարհների, վերանորոգման արհեստանոցների, բնակարանների կառուցումը, գիտա-հետազոտական և նախա-

գծային աշխատանքների ծավալումը, կադրերի պատրաստումն ու կոմպլեկտավորումը, շինարարական ամենաբարդ մեխանիզմների ստացումն ու տեղաբաշխումը, կառուցողների համար կուլտուր-կենցաղային պայմանների ստեղծումը և այլն։ 1950 թվականին, երբ ավարտվեց շինարարության այս բազայի ստեղծումը, ՍՍՌՄ Մինիստրների Սովետը և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն ընկեր Ստալինի ցուցումով որոշեցին երկու տարով կրճատել շինարարության ժամկետը, խնդիր դնելով՝ այդ վիթխարի կառուցումը ավարտել 1952 թվականի գարնանը։

Եվ Վոլգա-Դոն ջրանցքի շինարարների ամբողջ կոլեկտիվը պատվով կատարեց ստալինյան այդ մարտական առաջադրանքը։ Այս տարվա մայիսի 31-ին, ժամը 13 անց 55 րոպեին, միախառնվեցին ռուսական երկու գետերի՝ Վոլգայի և Դոնի ջրերը, անհուն հրճվանք պատճառելով սովետական ժողովրդին և ամբողջ աշխարհի պրոգրեսիվ մարդկությանը։

Կոմունիզմի ստալինյան մեծ կառուցումների առաջնեկի՝ Վլադիմիր Իլյիչ Լենինի անվան Վոլգա-Դոն ջրանցքի կառուցման վեհությունը ոչ միայն այն է, որ նա վառ



կերպով ցուցադրեց սովետական կարգերի, սովետական գիտության ու տեխնիկայի առավելությունները կապիտալիստականի հանդեպ, այլև այն, որ այդ կառուցմամբ լուծվեցին մի շարք կոմպլեքսային հարցեր, որոնք իրենց անգնահատելի լուման են մտցնում մեր մեծ Հայրենիքի հզորության հետագա բարձրացման գործում։ Դրանք են՝ գետային նավարկության, էլեկտրաէներգիայի արտադրության, անջրդի տարածությունների ոռոգման և երկաթուղային տրանսպորտի զարգացման հարցերը։

Անչափ մեծ է Վոլգա-Դոնի նշանակությունը որպես ջրային ճանապարհ։ Այն հանգամանքը, որ մոտ 440 կիլոմետր Դոնի նավարկելի ջրերով և ապա 101 կիլոմետրանոց Վոլգա-Դոն ջրանցքով ավարտվում է հինգ ծովերի՝ Բալթիկ, Սպիտակ, Կասպից, Ազովի և Սև ծովերի միացումը մեկ ընդհանուր ջրային սիստեմի մեջ և, այդպիսով, մեր մեծ Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվան դառնում է այդ հինգ ծովերի մեծագույն նավահանգիստը, ինքնին խոսում է այդ ջրանցքի նշանակության մասին։

Այսուհետև աշխարհիս այդ ամենամեծ ջրային մագիստրալով Ռոստովից մինչև Ստալինգրադ, այնուհետև Մոսկվայի վրա-

յով մինչև Լենինգրադ ու Մուրմանսկ և դեպի ետ՝ ազատորեն կերթևեկեն ինչպես մարդատար, այնպես էլ ապրանքատար նավեր, մեր Հայրենիքի մի ծայրից մյուսը փոխադրելով այնպիսի կարևոր հարստություններ, ինչպիսիք են՝ քարածուխը, անտառանյութը, ցեմենտը, նավթը, հացը, բամբակը, բազմապիսի մեքենաներ ու գործարանային սարքավորումներ և այլն։

Էլեկտրաէներգիայի արտադրությունը նույնպես կարևոր տեղ է գրավում Վ. Ի. Լենինի անվան Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի կառուցման ընդհանուր կոմպլեքսում։ Ցիմլյանսկայայի հիդրոհանգույցի սիստեմի վրա կառուցվելու է համանուն հիդրոէլեկտրակայանը՝ 160 հազար կիլովատ կարողությամբ, որը թեև տասնյակ անգամ փոքր է կոմունիզմի մյուս գիգանտ կառուցումներից՝ Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայաններից, բայց իր նշանակությամբ խիստ կարևոր է Ռոստովի և Ստալինգրադի մարզերի ինչպես արդյունաբերական ձեռնարկություններին էներգիա մատակարարելու, այնպես էլ գյուղատնտեսության աշխատատար պրոցեսները էլեկտրիֆիկացնելու տեսակետից։



Մեր մեծ Հայրենիքի էլեկտրիֆիկացման Լենինյան—Ստալինյան հոյակապ պլանի իրագործման համար մղվող պայքարում մեր պարտիան, մեր ժողովուրդը միշտ հիշում են Վլադիմիր Իլյիչ Լենինի ցուցումն այն մասին, որ «Կոմունիզմը— դա Սովետական իշխանությունն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան... Միայն այն ժամանակ, երբ երկիրն էլեկտրիֆիկացվի, երբ արդյունաբերությունը, գյուղատնտեսությունն ու տրանսպորտը դրվեն ժամանակակից խոշոր արդյունաբերության տեխնիկական բազայի վրա, միայն այն ժամանակ մենք կհաղթենք վերջնականապես» (Լենին, Երկեր, հատ. 31, էջ 654)։

Վլադիմիր Իլյիչ Լենինի անվան Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի կառուցումով լուծվող կոմպլեքսային հարցերի մեջ չափազանց մեծ տեղ է հատկացվում գյուղատնտեսության զարգացման հարցերին։ Ռուսական երկու մեծ գետերի՝ Վոլգայի և Դոնի ջրերի միացումը, Ցիմլյանսկայայի 23,8 միլիարդ խորանարդ մետր ջրատարողությամբ վիթխարի ջրամբարի և մի քանի հազար կիլոմետր երկարությամբ ոռոգիչ ջրանցքների ու հիդրոտեխնիկական սարքավորումների կա-





ուցումը, դաշտապաշտպան անտառաշերտերի լայն ցանցի ստեղծումը վիթխարի հնարավորություններ են ստեղծում մեր Հայրենիքի՝ դարերով խոպան ու ամայի մնացած այդ վայրերի բնությունը վերափոխելու և ծաղկուն վայրերից մեկը դարձնելու համար։ Բնության մեծ վերափոխիչի՝ ընկեր Ստալինի անմիջական նախաձեռնությամբ կազմված պլանի համաձայն մոտակա տարիներին Ռոստովի և Ստալինգրադի մարզերի 750 հազար հեկտար տարածությամբ հողեր պետք է դառնան ոռոգելի, իսկ երկու միլիոն հեկտարը՝ ջրովի։ Կոլտնտեսությունների և սովխոզների աշխատավորները կառուցվող մեքենա-տրակտորային կայանների, էլեկտրամեքենա-տրակտորային կայանների և ոռոգման սիստեմի լայն ցանցի բազայի վրա զարկ կտան գյուղատնտեսական այնպիսի կարևոր կուլտուրաների զարգացմանը, ինչպիսիք են ցորենը, բամբակը, բրինձը, կարտոֆիլը, խաղողագործությունն ու բանջարաբուծությունը։

Մոտավոր հաշիվները ցույց են տալիս, որ նոր ոռոգվող ու ջրովի դարձվող հողերը մեր Հայրենիքին լրացուցիչ կարգով կտան ավելի քան մեկ միլիոն 250 հազար տոննա



ցորեն, 160 հազար տոննա բրինձ, տասնյակ հազարավոր տոննա բամբակ, ավելի քան 600 հազար տոննա կարտոֆիլ և բանջարաբոստանային կուլտուրաներ։

Բացի դրանից, խոտացանքերի և մարգագետինների լայն տարածություններ ստեղծելու շնորհիվ այդ վայրերում մեծ չափերով զարգանալու է անասնաբուծությունը իր բազմաթիվ ճյուղերով՝ խոշոր և մանր եղջերավոր անասնաբուծությունը, խոզաբուծությունը, թռչնաբուծությունը և այլն։ Մոտավոր հաշիվներն ասում են, որ ոռոգելի և ջրովի դարձվող տարածություններից, խոտադաշտային ցանքաշրջանառության կիրառման հիման վրա կարելի է ստանալ ավելի քան մեկ միլիոն 400 հազար տոննա կոպիտ և հանդարոտային կերեր։ Կերերի այդ լրացուցիչ պաշարով հնարավոր է ավելացնել խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելի քան 200 հազարով, ոչխարների և այծերի գլխաքանակը՝ մեկ միլիոնով և այլն։

Չորրորդ հիմնական խնդիրը, որ լուծվում է Վոլգա-Դոն ջրանցքի կառուցմամբ, երկաթուղային տրանսպորտի նոր ցանցի ավելացումն է զգալի չափերով։ Լենինի անվան Վոլգա-Դոն ջրանցքի գործարկման մասին

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1952 թվականի հուլիսի 10-ի որոշման մեջ նշվում է, որ 1949—1952 թվականների ընթացքում Ստալինգրադյան երկաթուղու Մորոզովսկայա կայարանից մինչև Ցիմլյանսկայայի հիդրոհանգույցը և այդ հանգույցից մինչև Կուբերլե կայարանը կառուցվել է 174 կիլոմետր ընդհանուր երկարությամբ երկաթուղի։

Այսպիսով, մեր մեծ Հայրենիքը կոմունիզմի ստալինյան մեծ կառուցումների առաջնեկի՝ Լենինի անվան Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի գործարկումով կատարում է մի նոր վիթխարի քայլ դեպի կոմունիզմի մեծ շենքի լիակատար կառուցումը։

Մեր ագիտատորների բազմահազարանոց բանակի խնդիրն է՝ է՛լ ավելի լայն չափերով ծանոթացնել մեր բանվորներին, կոլտնտեսային գյուղացիությանն ու ինտելիգենցիային ստալինյան դարաշրջանի մեծ կառուցումներին, մոբիլիզացնել ողջ աշխատավորության քաղաքական ու աշխատանքային խանդավառությունը խաղաղության ու դեմոկրատիայի հզոր լագերի ավանգարդ Սովետական Միության հզորության հետագա ամրապնդման, կոմունիզմի լիակատար հաղթանակի համար մղվող պայքարում։

Հ. ՀՈՎՍԵՓՅԱՆ



## ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՀԱՄԱՐ

Սովետական պետությունը, բոլշևիկների պարտիան և անձամբ ընկեր Ստալինը ամենօրյա հոգատարություն են ցուցաբերում սովետական մարդկանց ֆիզիկական դաստիարակության նկատմամբ։

Սովետական կարգերի հաստատման առաջին օրերից ֆիզկուլտուրան և սպորտը մեր երկրում մեծ թափ է ստացել և կարևոր դեր է խաղացել նոր հասարակարգի կառուցման, աշխատավորությանը կոմունիզմի ոգով դաստիարակելու գործում։

Լենինը դեռ այն ժամանակ գրել է.

«Մեր աշխատանքային երկրին հարկավոր են ֆիզիկապես ամուր, ուժեղ կամքի տեր, արի, համառ էներգիայով լեցուն միլիոնավոր մարդիկ»։ Լենինի—Ստալինի պարտիան դաստիարակել է ուժեղ, արի, բարձր գիտակցությամբ մարդիկ, որոնք հերոսաբար ավարտեցին սոցիալիզմի կառուցումը և այսօր հաջո-

ղությամբ կառուցում են կոմունիզմի հոյակապ շենքը։

Մեր երկրում ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման համար ստեղծված են բոլոր պայմանները։ Հազարավոր ստադիոններում, սպորտային հրապարակներում, մարմնամարզության դահլիճներում, ջրային և դահուկային կայաններում միլիոնավոր աշխատավորներ զբաղվում են սպորտով։

Միայն ֆիզկուլտուրայի մասնագետ կադրեր պատրաստելու համար մեր երկրում ստեղծված են ֆիզկուլտուրայի և սպորտի 140 ուսումնական հաստատություններ։

Պատանեկական և երիտասարդական հատուկ սպորտ-դպրոցներում սովորում են ավելի քան 230 հազար հոգի։

Բոլոր դպրոցներում և բուհերում ֆիզիկական կուլտուրան հանդիսանում է պարտադիր առարկա։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1947 թվականի հուլիսի 2-ի որոշմամբ սպորտային վարպետությունը խրախուսելու համար սահմանված են ոսկյա և արծաթյա մեդալներ ու ժետոններ, որոնցով պարգևատրվում են սպորտի տարբեր ձևերի ռեկորդսմենները և չեմպիոնները։



Ամեն տարի ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման վրա պետությունը, պրոֆմիությենական և այլ կազմակերպություններ ծախսում են միլիոնավոր ռուբլիներ։ 1952 թվականի պետական բյուջեով առողջապահության և ֆիզկուլտուրայի համար նախատեսված է 22,8 միլիարդ ռուբլի։

Միայն մեր երկրում է հնարավոր այդպիսի մեծ հոգատարություն ցուցաբերել ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման նկատմամբ։

Մեր երկրում ֆիզկուլտուրան և սպորտը խոշոր վերելք է ապրում հատկապես Համ. Կ(բ)Պ Կենտկոմի 1948 թվականի դեկտեմբերի 27-ի՝ «Մասսայական ֆիզկուլտուրայի և սպորտի հետագա զարգացման մասին» պատմական որոշումից հետո, որը խնդիր դրեց մասսայական ֆիզկուլտ-շարժման ծավալման, սպորտային վարպետության մակարդակի բարձրացման և դրա հիման վրա մոտակա տարիներին սովետական սպորտսմենների կողմից սպորտի կարևորագույն ձևերի գծով համաշխարհային առաջնության նվաճումը։

Այդ որոշումից հետո սովետական սպորտսմենները սպորտի հիմնական ձևերից սահ-

մանել են մի շարք համաշխարհային ռեկորդներ։

Ամբողջ աշխարհին հայտնի են Մարիա Իսակովայի, Զոյա Խոլշչևնիկովայի, Ռիմա Ժուկովայի, Գրիգորի Նովակի, Կուտցենիցի, Զուկարինի և ուրիշ շատ սպորտսմենների անուններ, որոնք մի շարք անգամ հաղթանակ են տարել միջազգային հանդիպումների ժամանակ։

Սովետական սպորտսմենները միայն Բուդապեշտում կայացած միջազգային ուսանողական խաղերի ժամանակ 134 ոսկյա մեդալից շահեցին 115-ը։ Վերջին մի շարք մրցումների ժամանակ Սովետական Միության սպորտային պատիվը բարձր պահեցին բասկետբոլի և վոլեյբոլի հավաքական թիմերը։

Հուլիսի 19-ից մինչև օգոստոսի 3-ը Հելսինկիում անց են կացվում միջազգային 15-րդ օլիմպիական խաղերը, սպորտի 17 ձևերով, որին մասնակցում են նաև Սովետական Միության հավաքական թիմերը։

Մասսայական ֆիզկուլտուրայի ծավալման գործում աչքի ընկնող հաջողությունների են հասել նաև մեր ռեսպուբլիկայի ֆիզկուլտ կազմակերպությունները։

1948 թվականին ռեսպուբլիկայում ֆիզ-



կուլտ կոլեկտիվների թիվը հասնում էր 780-ի, որոնցում ընդգրկված էին 39.417 ֆիզկուլտուրնիկներ, 1952 թվականին ֆիզկուլտ կոլեկտիվների թիվը հասել է ավելի քան 2.226-ի, որոնցում ընդգրկված են 150 հազարից ավելի ֆիզկուլտուրնիկներ։

Ռեսպուբլիկայում գործում են պրոֆմիութենական 15 կամավոր սպորտ ընկերություններ, որոնցում ընդգրկված են 42.500 ֆիզկուլտուրնիկներ։

Գյուղական երիտասարդության մեջ մեծ աշխուժություն առաջացավ «Կոլտնտեսական» գյուղական կամավոր սպորտ ընկերության ստեղծումից հետո, որի շարքերում արդեն ընդգրկված են 40.000 ֆիզկուլտուրնիկներ։ «Կոլտնտեսական» կամավոր սպորտ ընկերության ստեղծումը պարտիայի կողմից ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման նկատմամբ մեծ հոգատարության մի վառ ապացույց է։

Ֆիզկուլտուրայի մասսայականության հետ միասին աճել է նաև սպորտային վարպետությունը։

1950 թվականի համեմատությամբ մոտ 10 հազարով ավելացել է սպորտսմեն կարգայինների թիվը։ Ավելի քան 10 տարվա ըն-

թացքում, մինչև 1950 թվականը, սպորտի տարբեր ձևերից սպորտի վարպետի նորման լրացրել և սպորտի վարպետի կոչում են ստացել ընդամենը 23 հոգի, իսկ 1951 թվականին և 1952 թվականի 6 ամիսների ընթացքում սպորտի վարպետի կոչում են ստացել 25 երիտասարդ սպորտսմեններ։

Ռեսպուբլիկայի հավաքական թիմերը ավելի ու ավելի են բարելավում իրենց տեղերը համամիութենական մրցումներում։

Վերջին մի շարք մրցումներում նշանակալից հաջողություն ձեռք բերին մեր ռեսպուբլիկայի մարմնամարզիկները, հեծանվորդները, գյուղական ուժեղները, բռնցքամարտիկները և այլն։

1951 թվականին անց է կացված ավելի քան 190 ռեսպուբլիկական սպորտ մրցաշարում, որոնց մասնակցել են ավելի քան 31 հազար սպորտսմեն։ Այս տարի արդեն անց է կացված 103 մրցաշարում, որոնց մասնակցել են ավելի քան 18 հազար սպորտսմեն։

1951 թվականին սպորտի տարբեր ձևերից սահմանվեցին 127 նոր ռեկորդ։ Այս տարվա 6 ամսում արդեն սահմանվել են 102 ռեկորդ, ընդ որում թեթև ատլետիկայից 56



ռեկորդ, լողից՝ 35, հեծանվային սպորտից՝ 4, ծանր ատլետիկայից՝ 3 ռեկորդ և այլն։

Այս տարի երիտասարդ թեթև ատլետները հասել են նոր հաջողության։ Այսպես օրինակ՝ Հոկտեմբերյանի շրջանից թեթև ատլետ Գառնիկ Եղիազարյանը տասը հազար մետր վազքի գծով հասավ սպորտսմեն Սարոմիլովի կողմից 1947 թ. սահմանված ռեկորդին։ Երիտասարդ սպորտսմեն Վալոդյա Հովսեփյանը գնդի հրումից և սկավառակի նետումից սահմանեց ռեսպուբլիկական նոր ռեկորդներ, որոնք 1943 թվականից սկսած պատկանում էին սպորտի վարպետ Սերգո Համբարձումյանին։

Ռեսպուբլիկայի անվանի սպորտսմենները՝ մարմնամարզության գծով 1952 թվականի բացարձակ չեմպիոն Հրանտ Շահինյանը, ֆիզկուլտ ինստիտուտի ուսանող, 1951 թվականի ՊԱՊ բազմամրցման միության չեմպիոն Նովիկով Իգորը, բռնցքամարտիկ Ենգիբարյանը, ըմբիշ Ռուբիկ Վարդանյանը Սովետական Միության հավաքական թիմերի կազմում մասնակցում են օլիմպիական խաղերին և փայլուն հաջողություններ ունեն։

Մեր երկրում ֆիզիկական դաստիարակության հիմքը հանդիսանում է «Պատրաստ

աշխատանքի և պաշտպանության» կոմպլեքսը։ Այդ կոմպլեքսի վրա է կառուցված սովետական երիտասարդության ֆիզիկական դաստիարակության գործը։

Վերջին ժամանակներս զգալի կերպով բարելավվել է «ՊԱՊ» կրծքանշանակիրների պատրաստման գործը։ Նորմաների հանձնումը հաջող է ընթանում Երևանում, Լենինականում և Ստեփանավանի, Արտաշատի ու այլ շրջանների շատ ֆիզկուլտ կոլեկտիվներում։

«ՊԱՊ» կրծքանշանակիրների պատրաստման գործին մեծ չափով օգնում են կառուցվող սպորտային բազաները։ Այդ ուղղությամբ զգալի աշխատանք է կատարվում հատկապես դպրոցներում։ Միայն 1951 թվականին դպրոցներում պատրաստված են ավելի քան 22 հազար կրծքանշանակիրներ։

Բոլշևիկների պարտիան սովետական մարդկանց սովորեցնում է չգոռոզանալ ձեռք բերած հաջողություններով, քննադատաբար նայել անցած ճանապարհին, համարձակորեն բացահայտել թերությունները և վճռական միջոցներ ձեռք առնել դրանք վերացնելու համար։

Ֆիզկուլտուրայի և սպորտի աշխատանք-



ների հետագա բարելավման համար անհրաժեշտ է ավելի համառորեն պայքար մղել ֆիզկուլտուրայի մասսայականության համար, ֆիզկուլտուրայի նոր կոլեկտիվներ ստեղծելու համար։

Անհրաժեշտ է լայն պայքար մղել սպորտային վարպետության բարձրացման համար, որն անհնարին է առանց ֆիզկուլտուրայի կոլեկտիվների ամրապնդման և սպորտային սեկցիաներում ուսումնա-սպորտային աշխատանքների որակի բարձրացման։

Լեկցիաների, զրույցների միջոցով երիտասարդ սպորտսմեններին պետք է բացատրել ամբողջ տարին սպորտով պարապելու անհրաժեշտությունը։

Բոլոր ֆիզկուլտուրային կազմակերպությունները՝ սկսած շրջանային կոմիտեներից մինչև ներքին կոլեկտիվները, պետք է աշխատեն պլանային կարգով, որը հնարավորություն կտա կատարել ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման պետական պլանը և 1952 թվականը դարձնել ֆիզկուլտուրայի և սպորտի աշխատանքների բարելավման նոր վերելքի տարի։ Այս խնդիրների մասին ագիտատորները պետք է սիստեմատիկաբար

գրույցներ անցկացնեն և օգնեն մասսայական ֆիզկուլտուրայի ծավալմանը։

Այս տարի Ֆիզկուլտուրնիկի համամիութենական օրը նշվեց սովետական ժողովրդի քաղաքական և արտադրական հաջողությունների նոր վերելքի պայմաններում։ Սովետական հերոս, ստեղծագործ ժողովուրդը նորանոր հաղթանակներ է ձեռք բերում կոմունիզմի կառուցման և խաղաղության համար մղվող պայքարում։

Ֆիզիկական կուլտուրան, որպես սոցիալիստական կուլտուրայի մի մասը, հանդիսանում է կոմունիզմի կառուցման կարևոր միջոցներից մեկը։

Բոլոր ֆիզկուլտ կազմակերպությունների մարտական խնդիրն է՝ հասնել նոր հաջողությունների ֆիզկուլտուրայի շարժման բնագավառում՝ ի փառս մեր փառապանծ Հայրենիքի։

Հ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ
(Ֆիզկուլտուրայի և սպորտի գործերի ռեսպուբլիկական կոմիտեի նախագահ)

---



## ԱԳԻՏԱՑԻԱՆ ԿՈՄԲԱՅՆԻ ԱԳՐԵԳԱՏՈՒՄ

Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր գյուղի Լենինի անվան կոլտնտեսության դաշտերում սկսվել է հացահատիկային կուլտուրաների մասսայական բերքահավաքը, որին մասնակցում են հարյուրավոր կոլտնտեսականներ ու կոլտնտեսուհիներ։ Բերքահավաքին մասնակցում է նաև հենակետային ցուցադրական մեքենա-տրակտորային կայանի երիտասարդ կոմբայնավար Սիմոն Մխսյանի կոմբայնի ագրեգատի անձնակազմը։

Բերքահավաքի առաջին օրը կոմբայնի ագրեգատը հանդիպեց որոշ խոչընդոտների։ Կոմբայնավար Մխսյանը աշխատանքի փորձ չունենալու պատճառով չկարողացավ հաղթահարել խոչընդոտները, որի հետևանքով արտադրական նորման թերակատարեց։ Նա փաստորեն օգնության խիստ կարիք էր զգում։ Այդ օգնությունը նրան ամենից առաջ ցույց տվեց ագիտատոր մեխանիկ Հենրիկ Գրիգորյանը։ Ագիտատորը խորը կերպով ուսումնասիրեց ագրեգատի ետ մնալու պատ-

ճառները: Պարզվեց, որ բերքահավաքի առաջին օրը կոմբայնավարը ժամային գրաֆիկ չէր կազմել, խախտել էր մեքենաների տեխնիկական խնամքի կանոնները, իսկ մյուս կողմից թույլ էր կոլտնտեսության դաշտավարական բրիգադայի սպասարկումը, մանավանդ դաշտի նախապատրաստման գործում:

Ընդմիջման ժամին ագիտատոր Գրիգորյանը կոմբայնի ագրեգատում աշխատող կոլտնտեսականներին, կոլտնտեսուհիներին, մեխանիզատորներին հավաքեց կոմբայնի մոտ և դաշտում անցկացրեց իր առաջին զրույցը: Նա վաղօրոք ուսումնասիրելով Հարևան Նալբանդյանի մեքենա-տրակտորային կայանի առաջավոր կոմբայնավար Ա. Սիմոնյանի աշխատանքի փորձը, իր զրույցը նվիրեց հենց այդ փորձի մասսայականացմանը:

— Ինչպես դուք տեսնում եք,— զրույցի ժամանակ ասաց ագիտատորը,— սկսվել է մասսայական բերքահավաքը, որի հաջող անցկացումը խոշոր նշանակություն ունի: Բերքը արագ և անկորուստ հավաքելու միջոցով կոլտնտեսությունը հնարավորություն կունենա պատվով կատարելու իր առաջին պատվիրանը՝ հացամթերումների պլանը,



ժամանակին կառանձնացնի սերմացուն, ապահովագրական, փոխօգնության ու հանրային մյուս ֆոնդերը և անհրաժեշտ քանակությամբ հացահատիկ կամբարի կոլտնտեսականների աշխօրերի դիմաց բաշխելու համար: Այս բոլորը կգան նպաստելու խաղաղասեր Սովետական պետության է՛լ ավելի հզորացմանը, կոլտնտեսության հետագա զարգացմանը, կոլտնտեսականների կենսամակարդակի բարձրացմանը: Հացահատիկը մեր երկրի հարստությունն է և այն պետք է հավաքել ամենայն խնամքով:

— Բայց,— ասաց ագիտատորը,— ձեր կոմբայնի ագրեգատը բերքահավաքի առաջին օրը իր խնդիրը չկատարեց, և եթե այդպես շարունակվի, բերքահավաքը կձգձգվի ու բերքի մեծ կորուստ կլինի: Այնինչ մենք բոլոր պայմաններն ունենք բերքը արագ և անկորուստ հավաքելու համար:

— Բերքահավաքը բարձր կազմակերպվածությամբ անցկացնելու համար,— շարունակեց իր զրույցը ագիտատորը,— անհրաժեշտ է, որ մեր մեխանիզատորները հարստացնեն իրենց տեխնիկական գիտելիքները, ուսումնասիրեն և ներդնեն աշխատանքի առաջավոր ձևերն ու մեթոդները: Այս տեսակետից

Շատ լավ կլինի, որ ընկ. Մխոյանն ընդօրինակի Հարեան Նալբանդյանի մեքենա-տրակտորային կայանի կոմբայնավար Արարատ Սիմոնյանի փորձը, որում ուսանելի շատ բան կա։ Այսպես, ընկ. Սիմոնյանն աշխատում է ժամային գրաֆիկայով, մեքենաները լավ է խնամում և հատուկ ուշադրություն է դարձնում դաշտերը հնձի համար նախապատրաստելու վրա։ Այս գործում նրան օգնում են կոլտնտեսության դաշտավարական բրիգադաների աշխատողները, որոնք հարթում են թմբերը, դաշտի եզրերին 3—4 մետր լայնությամբ ճանապարհ են բացում, կլորացնում են դաշտի ծայրերը, որի շնորհիվ կոմբայնը շրջադարձերը կատարում է սահուն և ամեն մի շրջադարձի դեպքում տնտեսում է ժամանակը։

Սիմոնյանը և կոմբայնի ագրեգատի մյուս մեխանիզատորները հաշվի են առնում խոնավությունը։ Սովորաբար առավոտյան և ուշ երեկոյան ժամերին հացաբույսերը խոնավ են լինում։ Այդ ժամանակ նրանք տրակտորն աշխատեցնում են առաջին արագությամբ, իսկ մյուս, սակավ խոնավ ժամերին՝ երկրորդ և երրորդ արագությամբ։ Երեք ժամ անընդհատ աշխատելուց հետո նրանք կես



ժամ կանգ են առնում՝ մեքենաներին տեխնիկական խնամք տալու համար։

Մեքենաներին լավ տեխնիկական խնամք տալու համար կոմբայնի ագրեգատի անձնակազմի մեջ կատարվել է աշխատանքի բաժանում, և ամեն մեկը պարզ ու որոշակի գիտե իր պարտականությունը։ Այսպես, կոմբայնավարն ստուգում է շարժիչը, թմբուկը և կալսիչի գլխավոր հանգույցները, նրա օգնականը՝ կոմբայնի ընթացքի մասը, իսկ տրակտորիստը մաքրում է տրակտորը և ստուգում նրա աշխատանքը։

Ընկ. Սիմոնյանը կոմբայնի վրա հարմարեցրել է գեներատոր և լապտերներ, որով էլեկտրական լուսավորություն է ստանում։ Դա նրան հնարավորություն է տալիս հունձ կատարելու նաև գիշերները, իսկ այդ, իհարկե, արագացնում է բերքահավաքը։ Այս ձևով աշխատելով՝ նա օրական հնձում է 14—15 հեկտար տարածություն և կոլտնտեսության շտեմարանն է հանձնում 30 տոննա հացահատիկ։

Ագիտատորի զրույցից հետո կոմբայնի ագրեգատի մեխանիզատորները մտան սոցիալիստական մրցության մեջ և պարտավորվեցին հնձի օրվա պլանը կատարել 120 տոկոսով։ Այս բանին հասնելու համար նրանք

բարելավեցին մեքենաների տեխնիկական խնամքը և սկսեցին աշխատել կոմբայնավար Ա. Սիմոնյանի օրինակով։

Բերքահավաքի երկրորդ օրը ագիտատորը նորից դաշտ գնաց և սկսեց մտերիմ զրույց ունենալ մեխանիզատորների հետ։

— Ինչպե՞ս է ընթանում հունձը, պլանը կատարվո՞ւմ է, թե ոչ,— դիմելով կոմբայնավար Միսայանին հարցրեց ագիտատորը։

— Այսօր 3 հեկտար ավելի հունձ ենք կատարել քան երեկ։ Բայց դա քիչ է և չի ապահովում սոցիալիստական մրցությամբ մեր ստանձնած պարտավորության կատարումը,— պատասխանեց Միսայանը։

— Դրա համար էլ պետք է լարեք ձեր բոլոր ուժերը,— ասաց ագիտատորը և ձեռնամուխ եղավ Իլյիչովկայի լույս ընծայմանը։ Դրա համար արդեն որոշ նյութեր կային։ Ահա դրանցից՝ «Կառմակերպել կոմբայնի գիշերային աշխատանքը», «Մեխանիզատորները մրցության մեջ մտան» և այլն։ Իլյիչովկան գրվեց կարճ ժամանակում և ամրացվեց դաշտային տնակի պատին։ Իլյիչովկայում ցույց էր տրված, թե ինչպես կոմբայնի ագրեգատի անձնակազմը մրցության մեջ մտնելով՝ լուրջ պարտավորություն է ստանձնել։ Բայց ստանձնած պարտավորու-



թյունների կատարման համար դեռ պահանջված չափով աշխատանք չի կատարվում և գիշերային հունձ չի կազմակերպվում։ Այդ բանի համար Իլյիչովկայում անվանական կարգով քննադատվել էին կոմբայնավարն ու տրակտորիստը, որոնք դանդաղ էին արմատավորում առաջավոր կոմբայնավարների փորձը։

Իլյիչովկայի քննադատությունից հետո Միսայանը կոմբայնի վրա հարմարեցրեց գեներատորն ու էլեկտրալամպերը, որով գիշերային աշխատանքի հնարավորություն ստեղծեց։ Գործի անցան նաև կոլտնտեսության դաշտավարական բրիգադայի կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները։ Նրանք սկսեցին հարթել թմբերը՝ հնարավորություն ստեղծելով կոմբայնի անխափան աշխատանքի համար։

Այս միջոցառումներից հետո կոմբայնավար Միսայանն սկսեց աշխատել նաև գիշերները և կատարել ու գերակատարել հունձի օրվա գրաֆիկը։ Բերքահավաքի երրորդ օրը Միսայանը հավաքեց 11, իսկ չորրորդ օրը՝ 12 հեկտարի բերքը, որով գերակատարեց բերքահավաքի օրվա գրաֆիկը։

Օրվա թերթերը մի հրճվալի լուր բերին, ավարտվել էր Վոլգա-Դոն նավարկելի ջր-

րանցքի կառուցումը և այդ առթիվ հրապարակվել էր ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը։ Ագիտատոր ընկ. Հ. Գրիգորյանը որոշեց իր հերթական զրույցը նվիրել կոմունիզմի մեծ կառուցումներին։ Բարձր տրամադրությամբ նա նորից գնաց իր ագիտացիայի տեղամասը։

— Մենք արդեն գերակատարում ենք հընձի նորման,— չսպասելով ագիտատորի հարցին՝ հայտնեց կոմբայնավարը։

— Որքա՞ն եք հնձել մեկ օրում։

— Տասներկու հեկտար,— կարճ պատասխանում է կոմբայնավարը։

—Այս օրերին այդ էլ քիչ է, ասաց ագիտատորը։ Այ, ձեզ այնպիսի ուրախալի լուր եմ բերել, որ ինքներդ կհամոզվեք ձեր աշխատանքի անբավարար լինելու մեջ։

— Սովետական ստեղծագործ ժողովուրդը,— ասաց ագիտատորը,— կոմունիզմի մեծ կառուցումների գործում այսօր նշում է մի հոյակապ հաղթանակ։ Ավարտվել է Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի կառուցումը։

Կոմունիզմի նորակառույցների հերոս շինարարները կառավարության սահմանած ժամկետին կատարեցին առաջադրանքը։ Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի շինարարության աշխատանքների ավարտումով ա-



պահովվեց Սպիտակ, Բալթիկ և Կասպից ծովերի միացումը Ազովի ու Սև ծովերի հետ՝ մի միասնական ջրատրանսպորտային սիստեմի մեջ, և այդ հնարավորություն տրվեց 1952 թվականին սկսելուածուխի, վառելափայտի, ցեմենտի, հացահատիկի և այլ բեռների մասսայական փոխադրումը այդ սիստեմով։

— Վոլգա-Դոն ջրանցքը կառուցողների հերոսական աշխատանքը,— շարունակեց ագիտատորը,— մի վառ օրինակ է մեզ համար։ Մեր մեխանիզատորների խնդիրն է՝ Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի շինարարների փայլուն օրինակով ավելի ու ավելի բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, նոր պարտավորություններ ստանձնել և սեղմ ժամկետում ավարտել հացահատիկի բերքահավաքը։

Լենինի շքանշանակիր Հ. Մխիթարյանի առաջարկով ագրեգատի անձնակազմը պարտավորվեց կոմբայնի օրվա հնձի արտադրողականությունը հասցնել 13 հեկտարի։

Հաջորդ օրը կոմբայնավար Մխսյանը ագրեգատի անձնակազմի հետ միասին հավաքեց 14 հեկտարի բերք, որով և հավասարվեց առաջավոր կոմբայնավարներին։

Ս. ԴԱՂԲԱՇՅԱՆ

═══

## ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԵՐԿԱԹՈՒՂԱՅԻՆՆԵՐԻ ՇՐՋԱՆՈՒՄ

Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի ձեռնարկություններում, կայարաններում պարտիական և անպարտիական 335 ագիտատոր ամեն օր բովանդակալից, հետաքրքիր զրույցների միջոցով բանվորների ու ծառայողների շրջանում մասսայականացնում են բոլշևիկների պարտիայի ու Սովետական կառավարության որոշումները, սովետական հերոս ժողովրդի ձեռք բերած պատմական հաղթանակները, միջազգային դրության հարցերը, ինչպես նաև երկաթուղայինների առաջ դրված կոնկրետ խնդիրները, որոնց անթերի կատարման նպատակով ագիտատորները բոլշևիկյան ճշմարտացի խոսքի միջոցով մոբիլիզացնում են երկաթուղայինների բոլոր ուժերը:

Ագիտացիոն աշխատանքի հարուստ փորձ է կուտակել Լենինականի շոգեքարշային դեպոյի պարտիական կազմակերպության ագիտկոլեկտիվը: Այս ագիտկոլեկտիվում ընդգրկված են քաղաքականապես պատրաստված, արտադրության մեջ առաջավոր 15 ընկերներ, որոնք ամեն օր իրենց բովանդակա-



լից զրույցների միջոցով օգնում են բանվորներին՝ պատվով կատարելու կոլեկտիվի առջև դրված խնդիրները: Նրանք բանվորների շրջանում մասսայականացրել են անվանի հրահանգիչ-մեքենավարներ Գ. Աբաջյանի, Ա. Խաչատրյանի, ծանրաքարշային մեքենավար Հ. Եղոյանի, բրիգադիր Հ. Զաքիկյանի, նորարար խառատ Ա. Սաֆարյանի և մյուս առաջավորների փորձը: Դրա շնորհիվ այժմ շատ մեքենավարներ, փականագործներ, խառատներ և ուրիշ պրոֆեսիայի տեր մարդիկ աշխատում են առաջավորների օրինակով և ապահովում առաջադրանքների անթերի և բարձր որակով կատարումը:

Այս ագիտկոլեկտիվի անդամ ստախանովական Ս. Ժամկոչյանը 10 տարի է, ինչ դեպոյի մեխանիկական ցեխի ագիտատորն է: Այդ ժամանակամիջոցում նա իր բոլոր գիտելիքները, ուժն ու եռանդը գործադրել է բանվորների արտադրական ակտիվությունը բարձրացնելու, ցեխի աշխատանքը բարելավելու, ստացված պատվերները ժամկետից շուտ և բարձր որակով կատարելու համար:

Ընկ. Ժամկոչյանը իր ամենօրյա ագիտացիոն զրույցները կապում է ցեխի առաջ

կանգնած խնդիրների հետ և օգնում կոլեկտիվին արմատավորելու առաջավորների փորձը։ Հաճախ նա ագիտացիոն զրույցների ընթացքում հանդես է բերում արտադրության առաջավորներին, որոնք պարզ ու հասկանալի լեզվով, կոնկրետ օրինակներով պատմում են իրենց հարուստ փորձի մասին։ Այսպես. վերջերս մի ագիտացիոն զրույցի ժամանակ ցեխի ստախանովականներ Ա. Սաֆարյանը, Ս. Մանվելյանը և Ս. Ղազարյանը պատմեցին, թե իրենք ինչպես են ռացիոնալ կերպով օգտագործում բանվորական օրվա 480 րոպեն և կատարում երկու, նույնիսկ ավելի արտադրական նորմա։ Այդ զրույցը տվեց լավ արդյունքներ։ Մեխանիկական ցեխի բանվորներ Վ. Բաղդասարյանը, Է. Գալստյանը և մյուսները ընդօրինակելով առաջավոր ստախանովականների աշխատանքի փորձը՝ սկսեցին պլանները կատարել 180—200 տոկոսով։ Նույնպիսի արդյունքների հասան նաև փականագործներ Ն. Պրիմյանը, Կ. Արարյանը, խառատ Ս. Մանուկյանը և ուրիշներ։

Առաջավորների փորձը լայնորեն արմատավորելու շնորհիվ ցեխի կոլեկտիվը վերացրեց խոտանի դեպքերը, տնտեսեց բավականին նյութեր, բարձրացրեց արտա-



դրության կուլտուրան և անցած վեց ամսում կատարեց 8 ամսվա առաջադրանք։

Երևանի կայարանը վատ էր աշխատում։ Այստեղ բեռնման ու բեռնաթափման առաջադրանքները թերակատարվում էին, վագոնների պարապուրդի ժամերը բարձր էին։ Այս հիմնականում բացատրվում էր նրանով, որ կայարանի հերթափոխություններում աշխատանքը վատ էր կազմակերպված, կարգապահությունը չէր գտնվում իր արժանի բարձրության վրա, չէր բարձրացված յուրաքանչյուր աշխատողի պատասխանատվությունը՝ գնացքների անվտանգ երթևեկությունն ապահովելու գործում։

Պարտիական կազմակերպության բյուրոն և նրա քարտուղար ընկ. Պ. Ղազարյանը խոր կերպով ուսումնասիրեցին կայարանի վատ աշխատանքի պատճառները և ձեռնամուխ եղան թերությունների վերացմանը։ Պարտիական բյուրոն ցեխերում, ցեխային ու գիշերային հերթափոխություններում ուժեղացրեց ագիտացիոն-մասսայական աշխատանքը։ Ագիտատորներն ավելի մոտ կանգնեցին բանվորներին, նրանց համար հետաքրքիր զրույցներ անցկացրին մեր երկրի վիթխարի նվաճումների, կոմունիզմի մեծ

կառուցումների, խաղաղության ամրապնդման համար սովետական ժողովրդի մղած հետևողական պայքարի ու այլ թեմաների շուրջը։ Ագիտացիայի նյութը կապելով ցեխերի և հերթափոխությունների առջև դրված խնդիրների հետ՝ ագիտատորները խոշոր չափով օգնեցին կոլեկտիվին՝ հաջող կատարելու արտադրական առաջադրանքները։

Ագիտացիոն զրույցի ժամանակ խոսելով կայարանի աշխատանքներում տեղ գտած թերությունների մասին՝ ագիտատորներ Ա. Հովսեփյանը, Օ. Պողոսյանը, Ե. Հովսեփյանը և ուրիշներ միաժամանակ լայն կերպով մասսայականացրին Բոյնյա կայարանի պետ, Ստալինյան մրցանակի լաուրեատ Ֆ. Մամեդովի աշխատանքի մեթոդը։

Լավ տիրապետելով կայարանի տեխնոլոգիական պրոցեսներին՝ նրանք կոնկրետ կերպով աշխատողներին ցույց տվին, թե Մամեդովի օրինակով աշխատելիս որքան օգուտ կարելի է տալ հայրենիքին։

Ագիտատորների պահանջով կայարանի մեթոդ բյուրոն Մամեդովի մեթոդի ներդրման համար անհրաժեշտ միջոցառումներ մշակեց։ Հերթափոխության յուրաքանչյուր հրամանատար զբաղվեց աշխատանքի կազմա-



կերպման, հերթափոխությունների աշխատանքի պլանավորման հարցերով։

Բոլշևիկյան ագիտացիայի կազմակերպման միջոցով Երևանի կայարանը օրեցօր, ամսեամիս սկսեց կատարել ու գերակատարել առաջադրանքները։ Հունիս ամսին կայարանի կոլեկտիվը բեռնման պլանը կատարեց 125 տոկոսով։

Սպիտակի կայարանը դարձել է Երևանի բաժանմունքի առաջավոր կայարանը։ Այստեղ սիստեմատիկ կերպով կատարվում են պետական առաջադրանքները և կոլեկտիվի ձեռքում է գտնվում բաժանմունքի Փոխանցիկ դրոշը։ Որպեսզի կայարանի կոլեկտիվը ձեռք բերած հաջողություններով չհանգստանա, ագիտատորները իրենց ամենօրյա զրույցներով բանվորներին ոգեշնչում են նորանոր հաջողությունների հասնելու։ Նրանք նշում են, որ սոցիալիստական մրցության ծավալման շնորհիվ կայարանի կոլեկտիվը 1951 թվականի բեռների փոխադրումների պլանը կատարել է մեկ ու կես ամիս շուտ, գերակատարվել են նաև տեխնիկա-տնտեսական մյուս ցուցանիշները։

Սակայն այդ դեռ բավարար համարել չի կարելի, որովհետև կոլեկտիվը շատ աննշան

աշխատանք է կատարել կայարանի բարեկարգման և ուղևորների կուլտուրական սպասարկման ուղղությամբ։ Ահա թե ինչու ագիտատորները կոլեկտիվին կոչ արին մրցություն ծավալել և հասնել այն բանին, որ կայարանը բաժանմունքում դառնա ամենաբարեկարգ և կուլտուրական կայարանը։

Կոլեկտիվը հավանություն տվեց ագիտատորների խելացի առաջարկությանը և սոցիալիստական մրցություն ծավալեց կայարանը բարեկարգելու համար։ Ընթացիկ տարվա անցած ամիսների ընթացքում կայարանի և գծի ցեխերի աշխատողների սեփական նախաձեռնությամբ ու ներքին միջոցներով կառուցեցին սլաքային նոր տնակներ, ծաղկազարդեցին կայարանի շրջակայքը, կառամատույցը, նորոգեցին ուղևորների սպասման դահլիճը և ուղևորների համար ստեղծեցին անհրաժեշտ պայմաններ։

Սպիտակցիների օրինակին հետևեցին Շահալի, Ղալթախչի, Հոկտեմբերյան, Էջմիածին և ուրիշ կայարանների երկաթուղայիններ, որոնք այս տարի խոշոր աշխատանք կատարեցին իրենց կայարանների բարեկարգման ուղղությամբ։

Բաժանմունքի քաղբաժինը զգալի աշխատանք է կատարում հատկապես դաշտային



կայարանների աշխատողների, միայնակ բանվորների շրջանում ագիտացիոն-մասսայական աշխատանքի գաղափարական բովանդակությունը բարձրացնելու ուղղությամբ։ Կազմակերպված ագիտացիոն բրիգադաների միջոցով քաղաքական և տնտեսական մի շարք հարցերի շուրջը զրույցներ են անցկացվել միայնակ երկաթուղայինների ու դաշտային կայարանների աշխատողների համար։ Բաժանմունքի շատ կայարաններում ստեղծված են ագիտպունկտեր, որոնք ապահովված են թերթերով, ամսագրերով, քաղաքական, տեխնիկական ու գեղարվեստական գրականությամբ։ Միայն Հոկտեմբեր կայարանի ագիտպունկտում կան 600 կտոր քաղաքական ու գեղարվեստական գրքեր, որոնցից օգտվում են ոչ միայն երկաթուղայինները, այլև դպրոցականները և կայարանին մոտ ապրող շրջանի աշխատավորները։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքը լավ է կազմակերպված նաև Անի, Արթիկ, Մասիս, Նալբանդ, Մայիսյան կայարաններում, Սանահինի շոգեքարշային դեպոյում և այլ ձեռնարկություններում։

Սակայն չի կարելի ասել, թե ամենուրեք պարտիական կազմակերպությունները իրա-

կան ղեկավարություն են ցույց տալիս ագիտկոլեկտիվներին, գործի են դնում ագիտացիոն-մասսայական աշխատանքի բոլոր ձևերը՝ առաջադրված խնդիրները հաջողությամբ լուծելու համար։ Այսպես, Կիրովականի, Թումանյանի, Ալավերդու, Երևանի շոգեքարշային դեպոների, բաժանմունքի շինարարական բաժնի և մի շարք ձեռնարկությունների ու կայարանների ագիտատորները մինչև օրս էլ վատ են աշխատում։

Բոլշևիկների պարտիան, ընկեր Ստալինը մեզ սովորեցնում են, որ որքան բարձր լինի աշխատավորների սոցիալիստական գիտակցությունը, այնքան ավելի արդյունավետ կլինի նրանց աշխատանքը, այնքան ավելի հաջողությամբ կկատարվեն մեր երկրի ժողովրդական տնտեսության պլանները։ Ուստի բաժանմունքի ագիտկոլեկտիվների խնդիրն է՝ ավելի լայն ծավալել քաղաքական-մասսայական աշխատանքը, գործի դնել բոլշևիկյան ագիտացիայի բոլոր ձևերը՝ ռեսպուբլիկայի երկաթուղայինների առջև դրված տնտեսական և քաղաքական խնդիրները հաջողությամբ կատարելու համար։

Ա. ԹԻՐԱԲՅԱՆ
Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի քաղբաժնի պետ

Իտ. խմբագրի՝ Մ. Տ. ՔՈՉԱՐՅԱՆ

